## Եւրոպայի նորերը

Նախագահ Թրումըն հրամայեց չընդհատել Անգլիոյ, Ֆրանսայի եւ Իտալիոյ սահմանուած պաշտպանական եւ տնտեսական օգնութիւնը, թէեւ այդ երկիրները 2.500.000 տոլարի զինական ապրանք ղրկած են խորհրդային երկիրներու ։ Թրումըն այս որոշումը տուած է նկատի առնելով հարկադրական պարագաներ եւ մտածելով որ օգնութեան ընդհատումը պիտի վնասէ Մ. Նահանգներու պաշտպանութեան ։

× Չըրչիլ Նիւ Եորք մեկնեցաւ երէկ, չորեքշաբթի, տեսակցելու համար զոր. Այզընհաուըրի հետ։ Բոլոր լուրերը կը հաստատեն թէ երկու վարիչները մասնաւորապէս պիտի քննեն Սթալինի վերջին հարց-պատասխանին, ի հարկին հանդիպում մը սարքելու համար։ Օրակարգին վրայ կան ուրիշ կարեւոր խնդիրներ։ Չըրչիլ շատոնց որոշած էր այս այցելութիւնը, որ կապ ունի նաեւ Քորէայի պատերազմին եւ գերմանական հարցին լուծման հետ ։

× Զոր. Այզընհաուըր ամէն օր կը խորհրդակցի ականաւոր անձերու հետ, վերջնական ուղեգիծ մը պատրաստելու համար։ Նոր երեսփ. ժողովը (83րդ) պիտի բացուի շաբաթ օր ։

Նախագահը առջի օր տեսակցեցաւ Մարշըլի ծրագրի նախորդ վարիչին՝ Հոֆմանի հետ որ ըսաւ թէ Մ. Նահանգները լաւ գործ մը կատարեցին, 12.500.000.000 տոլար ծախսելով Եւրոպայի մէջ ։ Զոր. Այզընհաուըր շատ մտահոգ է Եւրոպայի քաղաքական եւ տնտեսական կացութեան մասին։

---

ԹՈՒՆՈՒԶԷՆ կը հեռագրեն թէ ֆրանս. իշխանութիւնները վճռած են փութացնել բարենորոգումները։ Խռովարկութիւններ կատարուեցան հարաւ. Թունուզի մէջ։ Ահաբեկիչներու խումբ մը սահմանը անցած է Մարոքէն։ Ահաբեկումները կը շարունակուին ։

100.000 ԳԵՐՄԱՆՆԵՐ Պերլինի արեւմտեան շրջանը անցած են 1952ի ընթացքին։ Ամէն ամիս միջին հաշուով 15.000 հոգի կը փախչին ։

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԵՒ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղին, այս կիրակի, ժամը 15ին, Շամպր տը Քոմէրսի ընդարձակ սրահը, 6 rue des Trois Conils, Bordeaux: Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՊՕՄՈՆԻ (ՄԱՐՍԷՅԼ) ԵԿԵՂԵՑՒՈՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

3 Յունուար Շբ. Ճրագալոյց, սկիզբ. արարողութեանց 4, պատարագ 5.30:

4 Յունուար Տօն Ծննդեան.— Սկիզբ ժամերգութեանց 7, պատարագ 9.30 :

5 Յունուար, Բշ. Յիշատակ Մեռելոց.— Սկզ. 8, պատարագ 9.30, հոգեհանգիստ 11:

Դպրաց Դասը կը վարէ Գ. Լ. Ճերահեան :

ooooooooooooooooooooooooooooooooooooooo

### ՅՈՒՑԱԿ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ

4 Յունուար, կիրակի. — Հոգեհանգստեան պատարագ, ի յիշատակ Գրիգոր եպս. Գահապետեանի, ժամը 10.30ին:

11 Յնր.— Յայտնութեան եւ Մկրտութեան արարողութիւն, ժամը 10.30ին :

ooooooooooooooooooooooooooooooooooooooo

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Այս կիրակի, Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիին մէջ, յաւարտ Ս. պատարագի, Կաղանդի տօնակատարութիւն դպրոցի աշակերտներուն կողմէ ։

Երգ, արտասանութիւն, ՏՕՆԱԾԱՌ եւ կաղանդչէք աշակերտներուն։

Կը հրաւիրուին անխտիր բոլոր հայրենակիցները .— Հոգաբարձութիւն

ooooooooooooooooooooooooooooooooooooooo

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ. — Համախարբ. Միութեան Վալանսի մասնաճիւղը իր վշտակցութիւնը կը յայտնէ հայրենակից Յովսէփ Ուլուհօճեանի դառնագին մահուան առթիւ, իր տիկնոջ, զաւակներուն, եղբօրը, քրոջը եւ բոլոր պարագաներուն ։



## Համազգայինի հաւաքոյթ - ճաշը

### ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԱՌԹԻՒ

Համազգայինի Փարիզի վարչութիւնը հաւաքոյթ - ճաշ մը կազմակերպած է Յունուար 3ին, շաբաթ երեկոյ ժամը 8ին, Արարատ ճաշարանին մէջ, 51 rue des Ecoles, Paris (5) ։

Ծախքերու մասնակցութեան համար 500 ֆր.։

Արձանագրուիլ երեք հայ գրատուներու եւ ՅԱՌԱՋի վարչութեան մօտ :



## Հանդէս տօնածառ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Իսիի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին:

Խմբերգ, արտասանութիւն, հայկ. պարեր, Խրիմեան դպրոցի աշակերտ - աշակերտուհիներու կողմէ ։

Պիտի ներկայացուի Յ. Թումանեանի
ՏԷՐՆ ՈՒ ԾԱՌԱՆ

Դպրոցի աշակերտներուն պիտի բաժնուի նախընթրիք եւ պտուղ։ Մուտքը ազատ է :

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Տէր եւ Տիկ. Հրանդ Իփէքճեան, փոխան ծաղկեպսակի 1000 ֆր. կը նուիրեն Անտիլիի ծերանոցին Գ. Կարապետ Փաթթուկեանի մահուան առթիւ։ Ստանալ Յառաջէն։





Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme,Paris (13)

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԱՆԻԷԹ ԳՈՒԱ ՔՈԼՈՄԳ.— Հ.Յ.Դ. Արամ ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։ Ներկայ կ՚ըլլան Կեդր. եւ Շրջ. կոմիտէներու ներկայացուցիչները։ Կարեւոր օրակարգ։ Բացակաները նկատի կ՚առնուին ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի ժողովը այս շաբաթ Ազգ. Տան մէջ։ Օրակարգ.— Պատգամ. ժողով եւ պատգամաւորի ընտրութիւն։ Պարտաւորիչ ներկայութիւն ։

ՖՐ. ԿԱՊ. ԽԱՉԻ պարահանդէսի յանձնախումբին ժողովը այս շաբաթ ժամը 3ին Café-Régent :

ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Կոնէնվիլի, Առնուվիլի եւ Սարսէլի բոլոր ընկերները, Սարսէլի ծանօթ հաւաքատեղին, այս կիրակի ժամը 15.30ին։ Կարեւոր օրակարգ։ Բացակաները նկատի պիտի առնուին։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փետրուար 18ը կը տօնուի Փարիզի մէջ Փետր. 14ին ։

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ

ԼԻՈՆ.— Ծննդեան տօնին առթիւ, Լիոնի եկեղեցւոյն մէջ Շաբաթ Յունուար 3ին Ճրագալոյցի արարողութիւն։ Սկզբնաւորութիւն ժամերգութեանց կէսօրէ վերջ ժամը 4ին ։

Ծննդեան առաւօտ, կիրակի Յունուար 4ին, սկզբնաւորութիւն պատարագի ժամը 10ին։

Կը հրաւիրուի ժողովուրդը եւ կը խնդրուի լաւորէն օգնել, միշտ վառ պահելու համար Հայ. Եկեղեցին ։

### ԳՈՅԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ 1953

Փնտռել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն մօտ : ԳԻՆԸ 200 ՖՐԱՆՔ

Տէր եւ Տիկ. Արմենակ Պէրպէրեան, Գ. Ժիրայր Ճանճապեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Կարպիս Ճի-րաճեան եւ զաւակը (Պոլիս), Տէր եւ Տիկ. Սիմոն Լօքմակեօզ (Պոլիս), Տէր եւ Տիկին Զարեհ Լօղմա-նեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Օհաննեան (Հօլի-վուտ), Տիկ. Մաթիլտ Լօղմանեան (Հօլիվուտ), Գ. Վահան Պէրպէրեան (Պոլիս), Տէր եւ Տիկ. Մ. Ներսէսեան (Աթէնք), կը ծանուցանեն իրենց մօր եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՎԵՐԳԻՆ ՇԱՀԱԳԵԱՆԻ
(Ծնեալ Արթինեան)

գառնագին մահը, որ տեղի ունեցաւ յետ կարճա-տեւ հիւանդութեան, իր բնակարանին մէջ 73 rue des Prairies, Paris (20) :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր շաբաթ Փարիզի Հայոց եկեղեցին (15 rue Jean Goujon) ժամը 3.45ին, ուրկէ մարմինը պիտի փո-խադրուի Bagnoletի նոր գերեզմանատունը, (Avenue Raspail) իր ընտանեկան դամբանին մէջ:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն ընդունիլ :

## ՈՂԲԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն կը ծանուցանէ թէ Հայկ. Ծնունդի տօնին առթիւ Յունուար 6ին պատարագ եւ հոգեհանգիստ պիտի կատարուի Բ. աշխարհամարտի ընթացքին եւ ա-նկէ վերջ մեռած ընկերներու՝ Կարօ Կէօնեանի, Ղազար Քէօմիւրճեանի եւ Աւետիս Սիմոնեանի յի-շատակին :

Արտօրութենէն վերջ այցելութիւն երեք ընկեր-ներու շիրիմները, ընկերակցութեամբ քահանայի մը :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ԵՒ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մաս-նաճիւղին, այս կիր., ժամը 15ին, Շամպոը տը Բօմէրաի ընդարձակ սրահը, 6 rue des Trois Conils, Bordeaux: Մանրամասնութիւնները տեղին վրայ:

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՓՈՄՈՆԻ (ՄԱՐՍԷՅԼ) ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

3 Յունուար Ճր. Ճրագալոյց, սկիզբ. արա-րողութեանց 4, պատարագ 5.30:

4 Յունուար Տօն Ծննդեան.— Սկիզբ ժամեր-գութեանց 7, պատարագ 9.30 :

5 Յունուար, Բշ. Յիշատակ Մեռելոց.— Սկզ. 8, պատարագ 9.30, հոգեհանգիստ 11:

Գպրաց Դասը կը վարէ Գ. Լ. Ճերահեան :

## ՑՈՒՑԱԿ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ

4 Յունուար, կիրակի.— Հոգեհանգստեան պատարագ, ի յիշատակ Գրիգոր Էպս. Գահապան-եանի, ժամը 10.30ին :

11 Կիր.— Յայտնութեան եւ Մկրտութեան արա-րողութիւն, ժամը 10.30ին :

## Կ. ՄՈՄՃԵԱՆԻ ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍԸ

41 Quai de L'Horloge
**Galerie de la Cité**
(Ծովանկարներ եւ բնանկարներ)
3 Յունուարէն մինչեւ 24 յունուար :
Բացումը այսօր, շաբաթ ժամը 15ին :



# Համազգայինի նաւահոյթ - ճաշը

## ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԱՌԹԻՒ

Համազգայինի Փարիզի վարչութիւնը նաւահոյթ - ճաշ մը կազմակերպած է Յունուար 3ին, շաբաթ երեկոյ ժամը 8ին, Արարատ ճաշարանին մէջ, 51 rue des Ecoles, Paris (5) :

Ծախքերու մասնակցութեան համար 500 Ֆր.:

Արձանագրուիլ երեք հայ գրատուններ եւ ՅԱՌԱՋի վարչութեան մօտ :



## Հանդէս տօնածառ

կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Իսիի մասնաճիւ-ղին կողմէ, այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին:

Խմբերգ, արտասանութիւն, հայկ. պարեր, Խրիմեան դպրոցի աշակերտ - աշակերտուհիներու կողմէ :

Պիտի ներկայացուի Յ. Թումանեանի

ՏԷՐՆ ՈՒ ԾԱՌԱՆ

Դպրոցի աշակերտներուն պիտի բաժնուի նուէ-րներ եւ պաուղ: Մուտքը ազատ է :



# ԱԼՔԱԶ ԵՒ ՈՐԴԻ ՏԱՆ ԱՆԱԿՆԿԱԼԸ

Երգապնակներու (տիսք) մեծ հաստատութիւնը, ԱԼՔԱԶ տօնական օրերու առթիւ հրապարակ հանած է «տիսք»երու նոր շարք մը.—

Դերասան ԳՄԲԷԹԵԱՆԻՆ 6 քաւաղայի արտա-սանութիւնները :

Նոյնպէս ՈՒՏԻ ՀՐԱՆԴԻ հայերէն եւ սօլօ ա-րեւելեան ոճով երգուած հեղինակութիւնները, 15 տիսք:

Նախորդ հայկ. ժող. երգերու ճոխ մթերքովը ներկայիս մեր երգացանկը բարձրացած է 75ի : Այս բոլորը կեդրոնացած պիտի գտնէք.—

1.— ԱԼՔԱԶ՝ Մարսէյլ 23 rue St. Barbe (կեդ-րոնատեղի) :

ԲԱԼՈՒԵԱՆ գրատուն՝ Փարիզ, 43 rue Richer, Tél. Pro. 25-46:

HATCHERIAN Լիոն, 65 rue Dunoir :

Այս երեք կեդրոնատեղիներուն մէջ «փիկըփ»-ներ հաստատուած են : Փափաքողները կրնան ներ-կայանալ՝ կատարելու համար իրենց ընտրու-թիւնը:

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Dameame, Paris (13)

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոն-եան» խումբի ժողովը այս շաբաթ Ազգ. Տան մէջ: Օրակարգ.— Պատգամ, ժողով եւ պատգամաւորի ընտրութիւն: Պարտաւորիչ ներկայութիւն :

ՖՐ. ԿԱՊ. ԽԱՉԻ պարահանդէսին յանձնախում-բին ժողովը այս շաբաթ ժամը 3ին Café Régent :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմի-տէն սովորականէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Կու-րժէնվիլի, Անուվիլի եւ Մարսէյլի բոլոր ընկերնե-րը, Մարսէյլի ծանօթ հաւաքատեղին, այս կիրակի ժամը 15.30ին: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փետրուար 18ը կը տօն-ուի Փարիզի մէջ Փետր. 14ին :

## ՅԱՌԱՋ կը նուիրեն

Կաղանդի առթիւ Օր. Թորիկեան մէկ տարե-կան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը Գ. Թորիկեան, Մարսէյլ :

× Մարսէյլէն Գ. Մեսրոպ Նորոյեան մէկ տա-րեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը՝ Գ. Աւետիս Նորոյեանի, Ամերիկա :

× Aptէն Տիկին Ազատուհի Սարաֆեան այս տարի եւս կը նորոգէ իր նուէրը հօրը՝ Գ. Վարդան Տէրտէրեանի :

## ՏՕՆԱԾԱՌ — ԽՆՋՈՅՔ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Արենոյլներու եւ Ա-րիներու միութեանց, այսօր շաբաթ ժամը ճիշդ 20.30ին, Սալ Մազընայի մէջ: Սկաուտական, գե-ղարուեստական պէսպիսուն բաժիններով եւ ա-նակնկալներով :

Կը հրաւիրուին Արենոյլներու, Արիներու, գայլուկներու եւ թեւիկներու ծնողները եւ միու-թեան բարեկամները : Մուտքը ազատ է:

## ԴՈՑԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ 1953

Փնտռել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն մօտ : ԳԻՆԸ 200 ՖՐԱՆՔ



ԿԱՂԱՆԴԻ, ԾՆՈՒՆԴԻ, ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԵՒ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔՆԵՐՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵՂԱՆՆԵՐՈՒՆ ԱՆՍԻՆԴԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԶԱՐԴԸ:

ՄԱՐՈՔԻ ներեալներէն մէկը, Մարաքէշի փաշան, տեսակցութեան մը առթիւ ըսաւ թէ « խաղաղութիւն ծագած պիտի չըլլար, եթէ Սուլթանը՝ Սիտի Մոհամմէտ, չփրկէր իր խռովարարները: Ժողովուրդը չէ որ դժգոհ է, այլ վեհապետը՝ իր խորհրդականներով :Ես երեսուն տարի կռուած եմ բարեկարգութիւնը պահպանելու համար Մարոքի մէջ եւ կը խօսիմ իբրեւ իրագէտ »:

ԹԷՀՐԱՆԷՆ լուրեր կը հաղորդեն քարիւղի բանակցութեանց մասին: Մ. Նահանգները կ'ուզեն որ համաձայնութիւն մը կնքուի ամէն գնով: Կ'ըսուի թէ Անգլօ-իրանեան ընկերութիւնը պատրաստ է տասը միլիոն թոն քարիւղ գնելու, իսկ Մ. Նահանգներն ալ 100 միլիոն տոլար պիտի տան: Ամերիկա չուզեր որ Իրան մնանկանայ կամ կարմիրներուն ձեռքն իյնայ: Թէհրանի ամերիկեան դեսպանը նոր տեսակցութիւն մը ունեցաւ Տոքթ. Մոսատեղի հետ:

ՀՈԼԱՆՏԱ մերժեց արձակել Մոսկուայի հեռագրական գործակալութեան թղթակիցը՝ որ բանտարկուած է իբրեւ լրտես:

ԱՆԳԼԻԱ որոշեց աւելցնել իր վերազինման ծախքերը: Այս առթիւ՝ հրատարակուած տեղեկագիրը կ'ըսէ.— «Պէտք չէ մոռնանք թէ ստիպուած ենք դիմագրաւել կրկնակ վտանգ մը: Պէտք է նկատի ունենանք ոչ միայն անակնկալ յարձակում մը, այլեւ այն փորձերը որ կրնան կատարուիլ ներսէն, խախտելու համար Ատլանտեան զինակցութիւնը, ինչպէս կը խոստովանի խորհրդային հրատարակութիւնը »:

ՀԵՂԵՂՆԵՐԸ ահագին վնասներ պատճառած են Անտանայի մէջ, խորտակելով Մերսինի ամբարտակը: Ջուրերու տակ մնացած են ամբողջ գիւղեր, երկաթուղին, Տարսոնի դաշտը: — Իտալիոյ մէջ ալ ողողումները թումբեր խորտակեցին, ողողելով բազմաթիւ գիւղեր:

ՑԵՏԱԴԻՄԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻ մասին չընդհատող լուրեր կը հաղորդեն թուրք թերթերը: Մալաթիոյ մէջ երեւան հանուած է «Քրիք Քարտաշլար» անուն ընկերութիւն մը (Քառասուն եղբայրներ), որ կը խոստանայ եղեր «Ջին մեռնողին ձի, կինը մեռնողին կին, տունը այրողին տուն տալ»: Ձերբակալուած են 20 հոգի:

ԱՐՋ ՄԸ 14 տարեկան Թրքուհի մը առեւանգած եւ իր որջը տարած է Հէքեարիի մէջ (Թուրքիա), ինչպէս կը գրեն Թուրք թերթերը:

---

ՈՂԲԱՑԵԱԼ ԸՆԿԵՐՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն կը ծանուցանէ թէ Հայկ. Ծնունդի տօնին առթիւ Յունուար 6ին պատարագ եւ հոգեհանգիստ պիտի կատարուի Բ. աշխարհամարտի ընթացքին եւ անկէ վերջ մեռած ընկերներու՝ Կարօ Կէնճեանի, Ղազար Քէմուրճեանի եւ Անտոն Սիմոնեանի յիշատակին:

Արարողութենէն վերջ այցելութիւն երեք ընկերներու շիրիմները, ընկերակցութեամբ քահանայի մը:

---

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՊՕՄՈՆԻ (ՄԱՐՍԷՅԼ)
ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

4 Յունուար Տօն Ծննդեան.— Սկիզբ ժամերգութեանց 7, պատարագ 9.30:

5 Յունուար, Բշ. Յիշատակ Մեռելոց.— Սկզ. 8, պատարագ 9.30, հոգեհանգիստ 11:

---

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ

ԼԻՈՆ.—Յունուար 5, Բշ., Ճրագալոյց Ս. Ծննդեան, երեկոյեան սկիզբ. ժամերգութեան ժամը 15.30ին, պատարագ ժամը 17ին:

Յունուար 6, երեքշաբթի Տօն Ս. Ծննդեան, սկիզբ ժամերգ. ժամը 8ին, պատարագ ժամը 10ին, Ջրօրհնէք ժամը 12ին:

Կը հրաւիրուի գաղութը եւ կը խնդրուի յայտնի օգնել, միշտ վառ պահելու համար Հայ. Եկեղեցին:

---



---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)



---



---

## Հանդէս տօնածառ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Իսիի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին:

Խմբերգ, արտասանութիւն, հայկ. պարեր, Խրիմեան դպրոցի աշակերտ - աշակերտուհիներու կողմէ:

Պիտի ներկայացուի Թ. Թումանեանի
ՏԷՐՆ ՈՒ ԾԱՌԱՆ

Դպրոցի աշակերտներուն պիտի բաժնուի նախընթրիք եւ պտուղ: Մուտքը ազատ է:

---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ.Յ.Դ. Անի Թաղոյ խումբի ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն իրենց սիրեցեալ ընկ. ՊՕՂՈՍ ՏՕՇՕԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ, իր ընտանիքին եւ բոլոր պարագաներուն:

---



---






ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆԱՀԱՊԵՏ Ա•ԱԼԵՄՃԵԱՆ ու— րախութեամբ կը ծանուցանեն իրենց չորրորդ զաւկին՝ ԷՕԺԷՆԻ, ՌԻԹԱՅԻ ծնունդը, Փարիզ, 29 Դեկտեմբեր 1952:

---

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Կուսէնվիլի, Առնուվիլի եւ Սարսէլի բոլոր ընկերները, Սարսէլի ծանօթ հաւաքատեղին, այս կիրակի ժամը 15.30ին: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Փետրուար 18ը կը տօնուի Փարիզի մէջ Փետր. 14ին:

---

ԳՈՅԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ 1953

Փնտռել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն մօտ: ԳԻՆԸ 200 ՖՐԱՆՔ

---

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ժընեւ Պետրոսեան եւ զաւակները՝ Մարտիրոս եւ Ալիս եւ Գ. Կարապետ Ճանիկեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր, գարմիկին աղբօրը՝ ՄԻՐԻՃԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ եւ համայն Պետրոսեան գերդաստանի յիշատակին, այս չորեքշաբթի, 7 Յունուար՝ Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Rue Jean Goujon:

Կը հրաւիրուին ազգականները, բարեկամները եւ բոլոր յիշատակը յարգողները:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Մարսէյլէն Այրի Տիկ. Տօշոեան իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իր սիրեցեալ ամուսնոյն ՊՕՂՈՍ ՏՕՇՕԵԱՆԻ մահուան առթիւ (18 Դեկտ. 1952): Շնորհակալութիւններ նաեւ բոլոր անոնց որ նիւթապէս եւ բարոյապէս օժանդակեցին իր տարաբախտ ամուսնին հիւանդութեան ատեն:

…իւթեան եւն․ Ժխորը առաջացաւ, երբ Տիւքլօ ըսաւ թէ «Մարոքցիներ եւ Թունուզցիներ ազատագրեցան Ֆրանսացիներու կողմէ »:

Նախագահը, Պ. Հերիօ, ուժգնօրէն բողոքելով, յայտնեց թէ դեռ որքան պիտի խօսի: — «Կէս ժամ եւս», պատասխանեց Տիւքլօ: Ասոր վրայ երեսփոխանները երեք չորրորդով դուրս ելան:

Այնուհետեւ բանակցութիւնները շարունակուեցան նրբանցքներու մէջ եւ առաւօտեան ժամը 2.20ին էր որ տեղի ունեցաւ քուէարկութիւնը :

## Կացութիւնը Իրանի մէջ

Տոքթ. Մոսատեղ Յունուար 6ին վստահութեան քուէ ստացաւ Մէճլիսին մէջ, ջախջախիչ մեծամասնութեամբ: Ներկայ 65 երեսփոխաններէն [illegible]ը քուէ տուաւ, մէկը ձեռնպահ մնաց :

Փոխ վարչապետը կարդաց Տոքթ. Մոսատեղի գրաւոր տեղեկագիրը, որ կ'ըսէր թէ 15 ընդդիմադիրներու բանաձեւը «իր կռնակին մխուած դաշոյն մըն էր»: Յետոյ կը խօսէր վերջին խռովութեանց մասին :

Վերջին լուրերու համաձայն, աքսորուած է Իրանի «կարմիր մոլլան», Այաթոլլահ Գորկեյ, որ Վիէննա գացած էր, խաղաղութեան համագումարին մասնակցելու համար: Իր վերադարձէն ետքն էր որ խռովութիւններ ծագեցան :

Տոքթ. Մոսատեղի տեղեկագիրը կ'ըսէ թէ որ եւ է պատասխանատու պիտի ծառայէ օտարներու եւ Իրանի թշնամիներու շահերուն: Յետոյ բացատրեց թէ ընտրական նոր օրէնքը չի վնասեր ներկայ Մէճլիսին: Երեսփոխան մը քննադատեց վարչապետը: Ըսաւ թէ ոչ մէկը կրնայ զիրենք զրկել քննադատելու իրաւունքէն: «Բայց եւ այնպէս, Տոքթ. Մոսատեղ եզական մարդ մըն է Իրանի պատմութեան մէջ եւ պէտք է ուժ տալ ամէն կերպով »:

× Հեռագրի մը համաձայն, Տոքթ. Մոսատեղ համոզուած է ամերիկեան դեսպանին թէ Իրան պիտի կործանի, եթէ օգնութիւն չստանայ անմիջապէս: Դեսպանը կը ջանայ ելք մը գտնել եւ լուծել քարիւղի վէճը :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆՈՐ ԴԱՒ ՄԸ երեւան հանուեցաւ Գահիրէի մէջ: Ձերբակալուեցան 12 սպաներ, այն ամբաստանութեամբ թէ կ'ուզէին իշխանութիւնը յանձնել իրենց պետին՝ գնդ. Րաշիտ Մեհաննայի (երեք թագաւորական խնամակալներէն մէկը): Հեռագիրը կ'ըսէ թէ զօր. Նեկիպ անմիջապէս ներում շնորհեց բոլորին ալ :

ՍՈՒՐԻԱ փակեց Լիբանանի սահմանագլուխը, իբրեւ հետեւանք իր կառավարութեան դէմ մղուած լրագրական բուռն պայքարի մը: Երթեւեկը դադրած է :

ԱՆԳԼԻՈՅ արտաքին նախարարը, Իտըն, ճառ մը խօսելով ըսաւ թէ Արեւելեան Գերմանիոյ եւ Չեխոսլովաքիոյ մէջ կատարուած մաքրագործումները ախտանշան մըն են ներքին փթութեան եւ թէ «Փրակայի դատին հակասեմական յեչըը անոր ամէնէն չարաշուք երեւոյթն է»: Եւ յոյս յայտնեց թէ բոլշեւիկներն ալ պիտի չվերսկսին Հիթլերի հակահրէական պայքարը : Ակնարկելով Թիթոյի այցելութեան, ըսաւ թէ որչափ ինք արտաքին նախարար է, պիտի գործակցի որեւէ երկրի հետ, յանուն խաղաղութեան :

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԵՐԼԻՆԻ ապահովութեան համար խիստ միջոցներ ձեռք առին Դաշնակիցները :

### ՀԱՆԴԷՍ — ՏՕՆԱԾԱՌ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Վիէնի մասնաճիւղին կողմէ այս կիրակի կէսօրէն վերջը ժամը 3ին, Cercle Catholique սրահին մէջ: Բացման խօսք վարչութեան կողմէ:

Խմբերգ եւ արտասանութիւն մասնակցութեամբ Կապ. Խաչի երեք դպրոցներու: Պիտի պարեն Ադպըլըղեան քոյրեր: Կաղանդ Պապան ուտելիքի ծրարներ պիտի բաժնէ աշակերտներուն :

Մուտքը ազատ է :

### ՊԱՏԱՐԱԳ — ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ — Սուրէն եւ Հրանդ Թորոսեան եղբայրները, ինչպէս եւ Սիրունեան, Թիւթիւնճեան եւ Զուլճեան ընտանիքները (Քալիֆորնիա) կը ծանուցանեն թէ այս կիրակի առաւօտ, Գոմոնի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն ի յիշատակ իրենց մեծ մօր եւ մօր՝ այրի Տիկին ՄԱՐԻԱՄ ԱՑՎԱԶԵԱՆԻ, մեռած 11 Նոյ. 1952, Քալիֆորնիոյ մէջ: Կը հրաւիրուին յիշատակը յարգող ազգականներ եւ Տիգրանակերտցի հայրենակիցներ :



### ՅԱՌԱՋ կը նուիրեն

Պոլսոյ Քոլոմպէն Պ. Մ. Տէր Գրիգորեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր եղբօր՝ Ղազար Տէր Գրիգորեանի :

### ՅԱՌԱՋի տարածման համար

Մարսէյլէն Պ. Ա. Տէր Զաքարեանէ շնորհակալութեամբ ստացանք 4000 Ֆր. «Յառաջ»ի տարածման համար :

### ՀԱՆԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ դասախօսութիւնը այս ուրբաթ, ժամը 20.30ին, Café Régentի վերնայարկը, 70 rue Lafayette: Շարունակութիւն նախորդ դասախօսութեան (Հայկական Դատը երէկ եւ այսօր): Խօսք պիտի առնէ Պ. Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ:



### ՏՕՆԱԾԱՌ ԵՒ ԽՆՋՈՅՔ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կրընոպլի Կապ. Խաչի մասնաճիւղին, մեծ պատրաստութեամբ կը տօնուի «Մանուկներու Օրը» այս կիրակի ժամը 3էն մինչեւ 11, Արմընօնվիլի սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին իր դպրոցի աշակերտներուն կողմէ: Կաղանդ Պապան նուէրներ պիտի բաժնէ բոլոր մանուկներուն :

Խնջոյք - պարահանդէս մանկական բաժնէն վերջ: Ճոխ պիւֆէ: Սրահին տաքութիւնը ապահովուած է: Մուտքը ազատ է :

### ԾՆՈՒՆԴ ԵՒ ՋՐՕՐՀՆԷՔ

ՄԱՐՍԷՅԼ — Գոմոնի եւ Շրջանի Թաղ. խորհուրդը կը ծանուցանէ թէ Ծննդեան Ջրօրհնէքի արարողութիւնը յետաձգուած ըլլալով պիտի կատարուի այս կիր. առաւօտ, իսկ յաջորդ օր յիշատակ Մեռելոցի պատարագ եւ հոգեհանգիստ :



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ — Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի վիճաբանական հաւաքոյթը այս հինգշաբթի ժամը 9.30ին Ազգ. Տան մէջ, Métro Cadet.— Հայերէնի դասերը ժամը 8.15ին:

ՀԱՄԱԽԱՐԲ. Միութեան Վալանսի մասնաճիւղին ժողովը այս Կիրակի կէսօրէ առաջ ժամը 9ին, Քաֆէ Գոհարի սրահը: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ ըլլալ :

### ՔԱՌԱՁԱՅՆ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի, կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

### ԳՈՅԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ 1953

Փնտռել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն մօտ : ԳԻՆԸ 200 ՖՐԱՆՔ

### Կ. ՄՈՄՃԵԱՆԻ ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍԸ

41 Quai de L'Horloge
Galerie de la Cité
(Ծովանկարներ եւ բնանկարներ)
3 Յունուարէն մինչեւ 24 յունուար :





Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

իր գրած օրէն ի վեր : Գատերազմը փոխուած է ծաւալով եւ ձեւով : Պատերազմը այլեւս օրեւ է բուն պարզացման մէկ շրջանը պիտի չըլլայ, այլ կոր - ծանումը ձեր վարչաձեւին եւ հայրենիքին » :

Թրումըն յետոյ խօսքը ուղղելով խորհրդարաններին, կ'ըսէ.

— Չեմ գիտեր թէ որքան ժամանակ պէտք է Մոսկուայի վարիչներուն՝ ճանչնալու համար այս ճշմարտութիւնը : Երբ այդ կէտին հասնին, մեզ պիտի գտնեն պատրաստ՝ կնքելու համաձայնու - թիւններ, որոնք աշխարհը պիտի պաշտպանեն մպառնացող վտանգներէն : Քանի աւելի կը զօրանայ մեր աշխարհը եւ միացեալ ուժ կը կազմենք, անշուշտ փոփոխութիւն մը յառաջ պիտի գայ : Չենք գիտեր թէ ինչպէս տեղի պիտի ունենայ այդ փոփոխութիւնը, Կրեմլինի որոշումո՞վ, պետական հարուածո՞վ մը, յեղափոխութեա՞մբ, արբանեակներու դասալքութեա՞մբ, կամ այդ բոլոր աղդակներու չնախատեսուած զուգորդութեամբ » :

Իբրեւ եզրակացութիւն, Թրումըն թելադրեց զօր. Այզընհաուըրի որ շարունակէ իր քաղաքականութիւնը եւ «իր հրացանին կառչի» բոլշեւիկութեան դէմ կռուած ատեն : Երբեք այսքան ծանրակշիռ խօսքեր արտասանած չէր, իբրեւ նախագահ :

## ՀԱՅ ՄԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԱԾ

ՀԱՅՏԷԼՊԷՐԿ Գերման դատարանին կողմէ ե - րկրատահպատակ Սարգիս (= Ե.) Փ., գորգի եւ հնութիւններու վաճառական, 4 ամիս բանտար - կութեան դատապարտուած է այն ամբաստանու - թեամբ թէ գողցուած ապրանք ծախեր է :

Գորգի ներածման վաճառականի մը սպասաւորը 32 թանկարժէք պարսկական գորգեր կը գող - նայ եւ կը ծախէ Սարգիսի շատ աժան գիներով : Գորգերուն մեծ մասը գտնուած եւ վերադարձուած է բուն տիրոջը (շուրջ մէկ միլիոն ֆրանքի ար - ժէքով) : Փ. ուրացած է իր յանցանքը : Տեղական թերթերը լայն տեղ տալով այս դատին, կը գրեն թէ դատարանը իր ուշադրութիւնը դարձուցած է աւելի գողօնը գնողին քան թէ բուն գողին վրայ, թերեւս անոր համար որ ուրիշ մեղադրանքներ ալ եղած են եւ իր գործի ընկերն իսկ գէշ վկայութիւն տուած է :

---

ՏՈՒՐՔԵՐՈՒ յայտարարութիւնը պէտք է կատարել Փետր. 1էն առաջ : Այս կանոնին ենթակայ են նաեւ անոնք որ միանուագ կը վճարեն :

ՉԸՐՉԻԼ վերջացուց իր տեսակցութիւնը զօր. Այզընհաուըրի հետ եւ Ուաշինկթըն գնաց, Թրումըն ալ տեսնելու համար :

ՍՈՖԻԱՅԻ մէջ մօտերս պիտի դատուին 24 երիտասարդներ «Խրիսթօ Պոթեւ» վարժարանէն, այն ամբաստանութեամբ թէ դաղտնի շարժում մը նարքած եւ հակապետական կոչեր գրած են պատերուն վրայ : Տղաքը 16—17 տարեկան են :

## ՊԱՏԱՐԱԳ — ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ. — Սուրէն եւ Հրանդ Թորոսեան ընտանիքները, ինչպէս եւ Սիրունեան, Թիւթիւնճեան եւ Զուլճեան ընտանիքները (Քալիֆորնիա) կը ծանուցանեն թէ՝ այս կիրակի առաւօտ, Գոմոնի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն ի յիշատակ իրենց մեծ մօր եւ մօր՝ այրի Տիկին ՄԱՐԻԱՄ ԱՑՎԱԶԵԱՆԻ, մեռած 11 Նոյ. 1952, Քալիֆորնիոյ մէջ : Կը հրաւիրուին յիշատակը յարգող ազգայիններ եւ Տիգրանակերտցի հայրենակիցներ :

oooooooooooooooooooooooooooooooooooooo

ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ. — Այսօր ուրբաթ, ժամը 20.45ին, Elysée Montmartre սրահին մէջ (métro Anvers) ըմբիշ Յակոբ Այվազեան պիտի մրցի, Ֆըրանսացի ծանօթ ըմբիշ Josseի դէմ (5×3) :— Զ.




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)




## ՅԱՌԱՋ կը նուիրեն

Էջս ան Փրովանսէն ընկեր Ս. Քոնտոյեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Պ. Սամուէլ Ստամպուլեանի, Պուէնոս Այրէս :

Մէկ տարեկան «Հայ - Բոյժ» ալ Միհրան Դարբինեանի, նոյն քաղաքին մէջ :

× Նոր Տարուան առթիւ Վալանսէն ժանին Գազանճեան մէկ տարեկան Յառաջ կը նուիրէ Պ. Մանուկ Սարգիսեանի, Արտէշ :

## ԿԸ ԽՆԴՐՈՒԻ

Մեր բաժանորդներէն անյապաղ փակել 1952ի պարտքը :

Ստիպուած ենք հետզհետէ՝ ջնջել, Յունուարի ընթացքին, անվճար բաժանորդագրութիւնները :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ դասախօսութիւնը այս ուրբաթ, ժամը 20.30ին, Café Régentի վերնայարկը, 70 rue Lafayette : Շարունակութիւն նախորդ դասախօսութեան (Հայկական Դատը երէկ եւ այսօր) : Խօսք պիտի առնէ Պ. Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ :



## ՏՕՆԱԾԱՌ ԵՒ ԽՆՋՈՅՔ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կրընոպլի Կապ. Խաչի մասնաճիւղին, մեծ պատրաստութեամբ կը տօն - ուի «Մանուկներու Օր»ը՝ այս կիրակի ժամը 3էն մինչեւ 11, Արմընօնվիլի սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին իր դպրոցի աշակերտներուն կողմէ : Կաղանդ Պապան նուէրներ պիտի բաժնէ բոլոր մանուկներուն :

Խնջոյք - պարահանդէս մանկական բաժնէն վերջ : Ճոխ պիւֆէ : Սրահին տաքութիւնը ապահովուած է : Մուտքը ազատ է :

## ԾՆՈՒՆԴ ԵՒ ՋՐՕՐՀՆԷՔ

ՄԱՐՍԷՅԼ. — Գոմոնի եւ Շրջանի Թաղ. խորհուրդը կը ծանուցանէ թէ Ծննդեան Ջրօրհնէքի արարողութիւնը յետաձգուած ըլլալով պիտի կատարուի այս կիր. առաւօտ, իսկ յաջորդ օր յիշատակ Մեռելոցի պատարագ եւ հոգեհանգիստ :

oooooooooooooooooooooooooooooooooooooo



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ. — «Անտոք» ենթակոմիտէի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, ընկեր Մ. Մանուկեանի բնակարանը : Կարեւոր օրակարգ :

ՀԱՄԱԽԱՐՔ. Միութեան Վալանսի մասնաճիւղին ժողովը այս Կիրակի կէսօրէ առաջ ժամը 9ին, Քաֆէ Գոհարի սրահը : Կարեւոր օրակարգ : Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ ըլլալ :

oooooooooooooooooooooooooooooooooooooo

ՔԱՌԱՍՈՒՆՔ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի : Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :



Կ. ՄՈՄՃԵԱՆԻ ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍԸ
41 Quai de L'Horloge
Galerie de la Cité

(Ծովանկարներ եւ բնանկարներ)
3 Յունուարէն մինչեւ 24 յունուար :

ՆՈՒԷՐՆԵՐ — Դպրոցասէրի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է 75ամեայ յոբելեանին առթիւ հետեւեալ նուէրները (1 Օգոստ.էն մինչեւ 22 Դեկտ. 1952):

Պ. Օննիկ Մանուկեան (Քօմօ) 168.000 ֆր., Պ. Փիլիպոսեան (Ամերիկա) 18.000, Օր. Սիրանուշ Պէչճեան (Ամերիկա) 1800, Պ. Կ. Կիրակոսեան (Պոլիս), Պ. Մօսկոֆեան (Փարիզ) 1000ական, [illegible] Ֆրանսայէն Նիս, Տրակինեան եւն.) նոյն առթիւ — Պ. Մուշեղ Ճիլերճեան 25000 ֆրանք, Պ. Արփիար Հաճեան 20000, Տիկին Հիւրմիւզ, Պ. Արամ Պէրպէրեան, Սուրէն Գարախանեան, Ա. Համբիկեան, Տէր եւ Տիկ. Լօրէնեան, Պ. Հրանդ Պօղոսեան, ամն եւ ամն 5000ական ֆրանք:

(Շար.)

Յ. Կ. ԽԱՉԻՆ. — Փարիզէն Տիկին Կարապետ Կիւրքեան 2000 ֆրանք կը նուիրէ Յ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին: Ստանալ «Յառաջ»էն:

## ՊԱՏԱՐԱԳ — ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ — Սուրէն եւ Հրանդ Թորոսեան ընտանիքները, ինչպէս եւ Սիրունեան, Թիւթիւնճեան եւ Զուլճեան ընտանիքները (Քալիֆորնիա) կը ծանուցանեն թէ՝ այս կիրակի առաւօտ, Պօմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն ի յիշատակ իրենց մեծ մօր եւ մօր՝ այրի Տիկին ՄԱՐԻԱՄ ԱՑՎԱԶԵԱՆԻ, մեռած 11 Նոյ. 1952, Քալիֆորնիոյ մէջ: Կը հրաւիրուին յիշատակը յարգող ազգայիններ եւ Տիգրանակերտցի հայրենակիցներ:

## ՔԱՌԱՍՆՕՑ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, գլխաւորութեամբ Պ. Արա Պարթեւեանի: Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՅԵՏԱՁԳՈՒԱԾ

Յունուար 11ին, կիրակի, դերասան Ա. Գմբէթեանի «Պաղտասար Աղբար» ներկայացումը մեկնելու հիւանդութեան պատճառաւ յետաձգուած է: Նոր թուականը շուտով կը ծանուցուի: Ծախուած հրաւիրագիրները կը պահեն իրենց արժէքը յաջորդ ներկայացման համար:

# ԱԼՔԱԶ ԵՒ ՈՐԴԻ
# ՏԱՆ ԱՆԱՍՆԱՍԼՐ

Երգապնակներու (տիսք) մեծ հաստատութիւնը, ԱԼՔԱԶ տօնական օրերու առթիւ հրատարակած է «տիսք»երու նոր շարք մը.—

Դերասան ԳՄԲԷԹԵԱՆԻՆ 6 լաւագոյն արտասանութիւնները:

Նոյնպէս ՈՒՏԻ ՀՐԱՆԴԻ հայերէն եւ սոլօ: տարբերեան ձեռով երգուած հեղինակութիւնները, 15 տիսք:

Նախորդ հայկ. ժող. երգերու ճոխ մթերքովը ներկայիս մեր երգացանկը բարձրացած է 75ի:

Այս բոլորը կեդրոնացած պիտի գտնէք.—

1.— ԱԼՔԱԶ՝ Մարսէյլ 23 rue St. Barbe (կեդրոնատեղի):

ԲԱԼՈՒԵԱՆ գրատուն՝ Փարիզ, 43 rue Richer, Tél. Pro. 25-46:

HATCHERIAN Լիոն, 65 rue Dunoir:

Այս երեք կեդրոնատեղիներուն մէջ «տիկկրփօ»ներ հաստատուած են: Փափաքողները կրնան ներկայանալ՝ կատարելու համար իրենց ընտրութիւնը:

## Ծախու է Մարսէյլի մէջ

Վիլլա մը (արուարձանի մէջ) որ կրնայ բաժնուիլ երկուքի վեց եւ չորս սենեակներով, իւրաքանչիւր մասը 700 մեթր պարտէզով, պտղատու ծառերով եւ պաղ ջուրի ակով:

Ի հարկին կը փոխանակուի Փարիզի մէջ (քաղաք կամ արուարձան) յարկաբաժինի կամ փոքր վիլլայի մը հետ:

Մանրամասնութեանց համար, դիմել՝ ՅԱԿՈԲ ՋՈՐԳԱՃԵԱՆԻ, 136 Ave. des Olives, Marseille.



# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՅՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Յունուար 11ին, Կիրակի ժամը 4էն 12, Cercle Militaireի սրահներուն մէջ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ — Հայկական պարերու նոր յայտագիր, ղեկավարութեամբ ՕՐ. ԱԼԻՍ ԳԱՎԷԶԵԱՆԻ, կովկասեան պարեր ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒ կողմէ:

ՀՌՉԱԿԱՒՈՐ ORCHESTRE CUBAN PETTet ses Cubanan Cuban Boys

Տեղերը վերապահել հեռաձայնելով Ala. 16-65:

## ԿԸ ԽՆԴՐՈՒԻ

Մեր բաժանորդներէն անյապաղ փակել 1952ի պարտքը:

Ստիպուած ենք հետզհետէ ջնջել, Յունուարի ընթացքին, անվճար բաժանորդագրութիւնները:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



## ՏՕՆԱԾԱՌ ԵՒ ԽՆՋՈՅՔ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Կրընոպլի Կապ. Խաչի մասնաճիւղին, մեծ պատրաստութեամբ կը տօնուի «Մանուկներու Օրը»՝ այս կիրակի ժամը 3էն մինչեւ 11, Արմընօնվիլի սրահին մէջ:

Գեղարուեստական ճոխ բաժին իր դպրոցի աշակերտներուն կողմէ: Կաղանդ Պապան նուէրներ պիտի բաժնէ բոլոր մանուկներուն:

Խնջոյք - պարահանդէս մանկական բաժնէն վերջ: Ճոխ պիւֆէ: Սրահին տաքութիւնը ապահովուած է: Մուտքը ազատ է:

## ԾՆՈՒՆԴ ԵՒ ՋՐՕՐՀՆԷՔ

ՄԱՐՍԷՅԼ — Պօմոնի եւ Շրջանի Թաղ. խորհուրդը կը ծանուցանէ թէ Ծննդեան Ջրօրհնէքի արարողութիւնը յետաձգուած ըլլալով պիտի կատարուի այս կիր. առաւօտ, իսկ յաջորդ օր յիշատակ Մեռելոցի պատարագ եւ հոգեհանգիստ:



## ԳՈՅԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ 1953

Փնտռել Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն մօտ, ինչպէս եւ Բալուեան եւ Գարամեան գրատուներէն:

ԳԻՆԸ 200 ՖՐԱՆՔ

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— «Անտառ» ներթակոմիտէի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, ընկեր Մ. Մանուկեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ:

ՀԱՄԱԽՄԲ. Միութեան Վալանսի մասնաճիւղին ժողովը այս կիրակի կէսօրէ առաջ ժամը 9ին, Քաֆէ Գոհարի սրահը: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր անդամներէն ներկայ ըլլալ:





Կ. ՄՈՄՃԵԱՆԻ ՆԿԱՐԱՀԱՆԴԷՍԸ

41 Quai de L'Horloge
Galerie de la Cité
(Ծովանկարներ եւ բնանկարներ)
3 Յունուարէն մինչեւ 24 յունուար:

## Տոքթ. Մոսատեղ յաղթեց

Իրանի կորովի վարչապետը, Տոքթ. Մոսատեղ, յունուար 19ին լիազօրութիւն ստացաւ մէկ տարուան համար, մէկի դէմ 59 ձայնով, եւ չտեսնալ Այաթոլլահ Քաշանիի ընդդիմութեան: Առաջին անգամ է որ կրօնապետը ծանր պարտութիւն մը կը կրէ:

Երեսփ. ժողովին դիւանը ի պատասխան կրօնապետի նամակին, դիտել կուտայ թէ կարելի չէ օրակարգէն հանել օրինագիծը, առանց քուէարկութեան: Յետոյ կ'ըսէր թէ ոչ անհամաձայնութեան է, ոչ ալ հակօրինական՝ լիազօրութիւն տալ վարչապետին կամ ուրիշ մարմնի մը. ուստի ժողովը պիտի քննէ խնդիրը, թէր կամ դէմ քուէարկելու համար:

Այս դիտողութեան վրայ, կրօնապետը նոր նամակ մը ուղղելով կ'ըսէր — «Վճիռը կը ձգեմ երեսփ. ժողովին, բայց նորէն կը յիշեցնեմ թէ ապօրէն է լիազօրութիւն շնորհել վարչապետին»:

Կ'ըսուի թէ Տոքթ. Մոսատեղի ձեռքը անցած են գաղտնի փաստաթուղթեր որոնք դեղծում եւ կաշառակերութիւն կը վերագրեն կրօնապետին եւ իր ազգականներուն: Քաշանի անգամ մը եւս տեսաւ որ Տոքթ. Մոսատեղ շատ աւելի մեծ ժողովրդականութիւն կը վայելէ քան ինք: Հազարաւոր հեռագիրներ կը հասնէին Թեհրան, երկրին բոլոր մասերէն, մեղադրելով կրօնապետը: Մէճլիսի քուէարկութենէն առաջ, բազմախուռն օժտուած կառքեր կը շրջէին դուրսը, հետեւեալ աղաղակով — «Լիազօրութիւն տուէք Մոսատեղի»: Վարչապետին կուսակիցները պատերէն եւ ցանկապատերէն մագլցելով կը պոռային. — «Տուն պիտի չերթանք մինչեւ որ լիազօրութիւն չտրուի»: Խանութպաններ փեղկերը վար առած էին եւ մինչեւ կէս օր ամբողջ շուկան գոցուած էր: Քսան երեսփոխաններ ըսին թէ ժողովէն դուրս պիտի չելլեն մինչեւ որ լիազօրութիւն տրուի: Տոքթ. Մոսատեղ ալ կը սպառնար հրաժարիլ: Ապատանի մէջ 60.000 հոգի աշխատանքը դադրեցուցին, ի պատիւ Տոքթ. Մոսատեղի: Աւելի քան 200 կուսակիցներ որոշեցին Թեհրանի վրայ քալել ոտքով վաթթողով: Շատեր ալ արիւնով կընքուած հանրագիրներ պատրաստեր էին:

Հիմա որ Տոքթ. Մոսատեղ լիազօրութիւն շահեցաւ, կը կարծուի թէ պիտի կրնայ լուծել քարիւղի վէճը, ընդունելով անգլեւամերիկեան նոր ծրագիրը:

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ «հիթլէրական իշխանութիւն հաստատելու վտանգ չկայ», ըսաւ Տոքթ. Ատընաուըր, վերջին ձերբակալութեանց առթիւ: Ամերիկեան մարզպանին մէկ տեղեկագիրը կ'ըսէր թէ ժողովուրդին 44 %ը կուսակից է նացիականութեան: Տոքթ. Ատընաուըր կը հերքէ այս կարծիքը, դիտել տալով թէ վիճակագրութիւնը կատարուած է 1200 Գերմաններու վրայ: Վարչապետը միեւնոյն ատեն լաւ յայտնեց անգլեւամերիկեան իշխանութեանց բռնած ընթացքին դէմ:

ՀՆԴԿԱՉԻՆԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ծանրացած է քանի մը օրէ ի վեր: Պաշտօնական հեռագիր մը կ'ըսէ թէ, Ֆրանսական զօրքը ծանր կորուստներ կրած է Հարաւային շրջանին մէջ:

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ Լոնտոն հասած լուրերու համաձայն, գնդակահարուած է Խ. Միութեան Ապահովութեան Նախարարը, Վիքթոր Աբակումով:

ԻՍՐԱՅԷԼԻ երեսփ. ժողովը ուժգնօրէն ձաղկելով հակահրեայ կարմիրներու դաւերը, առ այժմ չուզեր օրէնքէ դուրս հռչակել զանոնք, որպէս զի գաղտնի գործունէութեան չդիմեն: Կ'ըսուի թէ Խ. Միութեան երկու միլիոն Հրեաներէն 600.000ը աքսորուած են (հրէական տեղեկագիր):

ԹՈՒՐՔԻՈՅ արտաքին նախարարը, Ֆուատ Քէօփրիւլիւ, Պելկրատ հասաւ: Պիտի փորձէ գործակցութիւն հաստատել, ի խնդիր Պալքաններու պաշտպանութեան: — Իրազեկ աղբիւրէ կը հաղորդեն թէ Խ. Միութեան արբանեակ երկիրները այժմ ունին 75 զօրաբաժին, (26 էր չորս տարի առաջ): Այս զօրաբաժինները կը բաղկանան աւելի քան մէկ միլիոն Հունգարներէ, Ռումանացիներէ, Պուլկարներէ եւ Ալպանացիներէ:

ՍՈՖԻԱՅԻ նոր դատին առթիւ, թերթերը կը գրեն թէ տասը ամբաստանեալները խոստովանած են ամէն բան: «Թշնամին տեղաւորուած է երկրին բոլոր վարչութեանց մէջ: Ամերիկեան գաղտնի սպասարկութիւնը իր գործակալները Պուլկարիա կը ղրկէր Թուրքիայէն, Յունաստանէն եւ Եուկոսլաւիայէն»:

---

### ԹԷՅԱՍԵՂԱՆ - ԽՆՋՈՅՔ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապ. Խաչի ՄէՆ ժեռոմի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին, Ս. Սահակ Մեսրոպ դպրոցի սրահին մէջ: Հաճելի ժամանց եւ անակնկալներ: Գեղարուեստական ճոխացուած բաժին:

---



---


Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Dameame, Paris (13)


Օր. ՍԻՐՎԱՐԴ ՏԱՏՈՒԵԱՆ
ՋԱՔԱՐ ՏՕՆԻԿԵԱՆ
Նշանուած

Կնքահայրութեամբ Պ. Փանոս Ասլանեանի:
Ալֆորվիլ, 10 Յունուար 1953

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. Փարիզի Եզնպտացի կոմիտէն սովորական ժողովի կը հրաւիրէ, Ռոստոմ, Աղբիւր Սերոբ, Մ. Եօթնեղբայրեան, Ռաֆֆի, Քրիստափոր, Վ. Խորէնի եւ Փոթորիկ խումբի բոլոր ընկերները, այս շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Place St. Sulpice, Café de la Mairie սրճարանին վերնայարկը: Ներկայ պիտի ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կ.ի ներկայացուցիչները: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 8.30ին, Յոյներու սրահը՝ 5 rue Bonnefoi, Lyon (3): Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Քատէ սրճարանի վերնայարկը: Պիտի խօսի Պ. Վ. ՄԵԼԻՔԵԱՆ: Նիւթ՝ «Այսօրուայ Համլետ եւ Հայերը»: Մուտքը ազատ է:

ՀԱՄԱԽԱՐԲ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի տարեկան մեծ պարահանդէսը Մարտ 14ին, Clubի մեծ սրահին մէջ (51 rue Grignan):

---

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ 1953Ի ՏԱՐԵԳԻՐՔԸ

Փարիզի մէջ կը ծախուի հայ գրավաճառներուն եւ ընկերութեան անդամներուն մօտ:

Գինը 500 ֆրանք:

---

### ՊԱՏԱՐԱԳ ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

Այս կիրակի 25 Յունուար, Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյն մէջ Ս. պատարագի երգեցողութիւնները պիտի կատարուին Փարիզի եկեղեցւոյն 14 հոգինոց չքնաղ դպրաց դասին կողմէ:

---

տրեւելքէն Պերլինի արեւմտեան շրջանը հասան եւ հռսանքը չէ դադրած դեռ: Կը կարծուի թէ համբաները բոլորովին պիտի փակուին :

Փախստականներուն պատմութեան համա-ձայն խորհրդային իշխանութիւնները գէպի Ռուսիա պիտի աքսորեն արեւելեան շրջանի Գերման-ները, գրաւելով անոնց հողերը :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹԵՀՐԱՆԻ ոստիկանութեան վերատեսուչը, զօր. Քամալ, պաշտօնանկ եղաւ: Իրեն յաջորդեց զին. կառավարիչը, զօր. Աւշարդուս :

ԱՐԵՒԵԼ. ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ ձերբակալուեցան 12 ճարտարագէտներ, այն ամբաստանութեամբ թէ խափանած են ածուխի արտադրութիւնը:— Արեւմտ. Գերմանիոյ վարչապետը յայտարարեց թէ Գերմանիան երբեք պիտի չվերահաստատէ նացիական կարգուսարքը:— Պաւարիոյ դատական նախարարը նամակ մը ստացած է, որ կ'ըսէ թէ Հիթլեր ողջ է... Նամակագիրը ընդհ. ներում կը պահանջէ Նացիներուն համար, Հիթլերի տեղը յայտնելու համար :

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԸՆՏԱՆԻՔԻՆ ԳԻՐՔԸ

Բ. Տպագրութիւն՝ բոլորովին բարեփոխուած

ԵՐԱԶԱՀԱՆ (3000է աւելի երազներու մեկնութիւն): ՎԻՃԱԿԱՑՈՅՑ - ԲԱԽՏԱՑՈՅՑ: ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՈՀԱՆՈՑ (արեւելեան եւ եւրոպական կերակուրներ): Առողջապահական գիտելիքներ եւ ընտանեկան զբօսանք :

640 էջ, գինը 1000 Ֆր., առաքման ծախքով 1160 Ֆրանք :

Դիմել՝ LIBRAIRIE H. SAMUELIAN
51 Rue Monsieur le Prince, Paris (6)
Cheque Postal Paris 1278 — 35

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Վալպարէզի եւ շրջանի հայութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ անդամ Պ. Եր. Գասապօհանեանի եւ իր բոլոր պարագաներուն, Տիկին Ն. ԳԱՍԱՊՕՀԱՆԵԱՆԻ ցաւագին մահուան առթիւ :

ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ՆԻՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբի: Այս կիրակի ժամը 3.30ին, Cercle Molière le Petit Théâtre ծանօթ սրահին մէջ :

Պօմոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի կողմէ Ա. անգամ ըլլալով կը ներկայացուի ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՓԵՍԱՅՈՒՆ կամ «ՏԱՅՐ ԿԱՐԱՊԵՏ» :

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն եւ բանախօսութիւն :



# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ, ժամը 9ին, Ռէժանի վերնայարկը: Նիւթ՝ (շար. նախորդ դասախօսութեան):

●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●●

ԸՆԿԵՐԱ - ՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի եւ նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պուլվառ Օտտոյի «Վռամեան» ենթակոմիտէի :

Այս շաբաթ ժամը 20ին Շրմէն տը լա Մատրակ, Bar Internationalի մէջ :

Կը խօսի ընկեր ՏԻԳՐԱՆ ԹԱԴՈՍԵԱՆ :



ՏՕՆԱԾԱՌ ՀԱՆԴԷՍ

Վալպարէզի դպրոցին տարեկան տօնածառահանդէսը այս կիրակի ժամը 15ին «Վէնսան» սրահին մէջ: Կը նախագահէ հոգեւոր հովիւ Տէր ԲԱԲԳԷՆ ՔՀՆՅ. ԱՍԼԱՆԵԱՆ: Կը հրաւիրուին ծնողները եւ բոլոր հայրենակիցները :

Մուտքը ազատ է:



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՏԱՆ յանձնաժողովի նիստը այս կիրակի, ժամը 16ին, Régent սրճարանի վերնայարկը: Կը հրաւիրուին բոլոր անդամները:

Հ. Յ. Դ. Փարիզի Եգիպտացի կոմիտէն ատիպողական ժողովի կը հրաւիրէ, Ռոստոմ, Աղբիւր Սերոբ, Մ. Եօթնեղբայրեան, Ռաֆֆի, Քրիստափոր, Վ. Խորէնի եւ Փոթորիկ խումբի բոլոր ընկերները, այս շաբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Place St. Sulpice, Café de la Mairie սրճարանին վերնայարկը: Ներկայ պիտի ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կ.ի ներկայացուցիչները: Բացակաները նկատի պիտի առնուին :

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 8.30ին, Յոյներու սրահը՝ 5 rue Bonnefoi, Lyon (3) : Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ՎԱԼԱՆՍ. - Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ ընկերները այս շաբաթ ժամը 20ին: Խիստ կարեւոր օրակարգ:

ՀԱՄԱԽԱՐԲ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի, առաւօտեան ժամը 9ին, Պառ տիւ Կլօպի սրահին մէջ, 7 Պուլվառ տ'Աթէն :

ՄԱՐՍԷՅԼ.— Բարձր Հայքի Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 15ին, 19a, rue Venture Հ. Բ. Ը. Մ. սրահը: Օրակարգ՝ — Զեկուցում եւ հաշուետուութիւն, նոր վարչութեան ընտրութիւն :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Մարսէյլի Հայ Արինեբու եւ Արենոյշներու կողմէ Վարդանանքը կը տօնուի Մարտ 1ին, կիրակի ժամը 14էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ :

ԹէՅԱՍԵՂԱՆ - ԽՆՋՈՅՔ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապ. Խաչի Սէն Ժեռոմի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին, Ս. Սահակ Մեսրոպ դպրոցի սրահին մէջ: Հաճելի ժամանց եւ անակնկալներ: Գեղարուեստական խնամուած բաժին:

ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին Notre Dame de Loretteի եկեղեցին :

Սիրով կը հրաւիրուի հասարակութիւնը :

Թուրքիա նոյն տեսակէտներն ունին Պալքաններու պաշտպանութեան մասին :

## ՔԻՉ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼ. ՎԻԹԽԱՐԻ ՆԱՒ ՄԸ, «Քուին Էլիզապէթ», որ 83.000 թոն տարողութիւն ունի, քիչ մնաց պիտի ընկղմէր Դշ. օր: Յաջորդ օրը նորէն բախեր երեւցան, մեծ մտահոգութիւն պատճառելով: Այս առթիւ հարցաքննուեցան 600 հոգի: Կը կարծուի թէ դաւ մը սարքուած է: Քանի մը օր առաջ ալ ուրիշ մեծ նաւ մը կորսուեցաւ հրդեհի մը հետեւանքով :

ԹԷՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ հայրենասէրներ յարձակեցան Սպահանի «Խաղաղութեան Տան վրայ», վիրաւորելով շատ մը կարմիրներ: Յարձակողները կրակի տուին բոլոր թուղթերը եւ գիրքերը :

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ 3—4 տարի պատիժ ստացան կօշիկի գործարանի մը երեք անօրէնները, այն ամբաստանութեամբ թէ կեղծ հաշուեցոյցներ կազմած, վարնոց կաշիներ ծախած էին եւն. :

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ նոր յուշագիր մը ուղղեց Տանըմարքայի, գիտել տալով թէ երբ խարխախներ կը տրամադրէ օտար զօրքի՝ ուղղակի կը մասնակցի Խ. Միութեան դէմ սարքուած պատերազմին: Տանըմարքա միշտ կը մերժէ այս մեղադրանքը :

ԱՒՍՏՐԻՈՅ հաշտութեան դաշնագրի մասին նոր ծանուցագիր մը ղրկած էր Խ. Միութիւնը : Անգլիա եւ Մ. Նահանգները պատասխանեցին թէ չեն կրնար որեւէ նախապայման ընդունիլ, բանակցութիւնները վերսկսելու համար :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ արտ. նախարարը երէկ ճամբայ ելաւ դէպի Եւրոպա, խումբ մը խորհրդականներով: Նախ Իտալիա պիտի հանդիպի : Աւելի երկար պիտի մնայ Փարիզի մէջ :

ՖՐԱՆՍ. ԱԿԱԴԵՄԻԱՅԻՆ անդամ ընտրուեցան բանաստեղծ Ֆէրնան Կրէկ, գրագէտ Կաքսոտ եւ դուքս մը, Լըվի Միրփուա :

ՔՆՆՈՒԹԻՒՆ բացուեցաւ մանեչալ Ժիւէնի ճառի մասին, որուն ամփոփումը տուած էինք երէկ եւ որ ուղղուած էր Մ. Նահանգներուն դէմ : — Փարիզի ամերիկեան նոր դեսպանը յայտնեց թէ «Ֆրանսա Եւրոպայի դուռն է եւ Մ. Նահանգները կ'ուզեն որ «զօրաւոր եւ ապառ ըլլայ» :

ՅՈՒԿՈՍԼԱՒԻԱ տասը օր պայմանաժամ տըւաւ Պուլկարիոյ, որպէսզի երաշխաւորէ Սոֆիայի եռւկոսլաւ դիւանագէտներուն ապահովութիւնը, այլապէս պիտի արտաքսէ երեք պուլկար դիւանագէտներ :





Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Dameame,Paris (13)

# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Փետրուար Շաբաթ ժամը 20.30ին, Sociétés Savantesի թատերասրահին մէջ, 8 rue Danton, métro St. Michel եւ Odéon :

Մանրամասնութիւնները յաջորդով :
Կը նախագահէ ընկեր Ս. ԹՈՐՈՍԵԱՆ
Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

## Հանդէս երեկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Քաշանի մասնաճիւղի :

Շաբաթ, 7 Փետրուար, ժամը 20.30էն մինչեւ կէս գիշեր: Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux):

Ճոխ եւ խնամուած յայտագիր :

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Յ. Պարոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն :

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ:

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր :

Պիւֆէ մատչելի գիներով : Ծախքերու մասնակցութիւն :

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux) :

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն :





ՊՍԱԿԻ ՕՐԵՐԸ.— Փարիզի Հայ. Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը հայ հասարակութեան ուշադրութեան կը յանձնէ հետեւեալ կէտերը, պսակի արարողութեան մասին.— Յունուար 31էն մինչեւ Փետրուար 12 հինգշաբթի արգիլուած : Ամբողջ Մեծ Պահքի օրերը մինչեւ Զատկ. առաջին կիրակին արգիլուած :

Նոր կիրակիի երկուշաբթիէն մինչեւ Վարդավառի բարեկենդան Յունիս 14, թոյլատրուած, բացի 24 Մայիս Հոգեգալստեան կիրակիէն :

Յառաջիկային կը տրուին հարկ եղած տեղեկութիւնները տարուան մնացեալ օրերուն մասին:

ՓԱՐԻԶԻ Հայ. եկեղեցւոյ կրթ. մարմինը շընորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները: Պ. Կորկանեանէ (Լըվալուա) 30000 Ֆրանք: Պ. Գազանճեանէ Տ. Վռամշապուհ արք. Քիպարեանի եւ Քիպարեան ընտանիքին հոգեհանգստեան առթիւ 2000 Ֆրանք: Փարիզի եկեղեցւոյ Լիլայի դպրոցին համար Տէր եւ Տիկ. Արամ Մարտիրոսեան, Տէր եւ Տիկ. Յովսէփ Խիրանեան, Տէր եւ Տիկ. Յովհ. Մարտիրոսեան 1000ական Ֆր.: Տէր եւ Տիկ. Կարապետ Գարակէօզեան 500 Ֆր., Տիկ. Իրմա Նազար ծնեալ Աճէմեանի դառնաղէտ մահուան առթիւ:

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արդարութեան» խումբի ժողովը՝ այս շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին :

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ ժամը 20.30ին, ընկ. Արշակի բնակարանը: Կարեւոր օրակարգ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Պէլվիլի Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի տարեկան ընկերա-համակրական խնջոյքը՝ Մարտ 1ին :

ՄԱՐՍԷՅԼ.— Համախարբ. Միութեան Սէնթ Անթուանի մասնաճիւղի ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Յ. Կիրակոսեանի բնակարանը, Սէնթ Անթուան :



ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Սեր. Մուրատ Ուս.ի վարչութիւնը հետեւեալ նուէրները ստացած է իր ընդհ. ժողովի ատենապետ ողբացեալ ՆՇԱՆ ՋՕՐԱՅԵԱՆի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի .—

Տիկ. Արմենուհի Հապէշեան եւ ամուսինը 2000 Ֆր., Պ. Պ. Յ. Շիրվանեան 500, Եղիազար Մինասեան 500, Ստեփան Մարկոսեան , Յակոբ Յակոբեան, Երուանդ Երանոսեան 1000ական :

ԾԱՆՕԹ.— Միութեան գանձապահին անունն ու հասցէն.— Agopian A., 60 Ave. Aristide Briand , Bagneux (Seine):